Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ



№ 10 ՄԱՅԻՍ 1956

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։





## ՊԵՏԱԿԱՆ ԿԵՆՍԱԹՈՇԱԿՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Ժողովրդի նկատմամբ պարտիայի և կառավարության հոգատարության մի նոր փայլուն օրինակ հանդիսացավ վերջերս հրապարակված «Օրենք պետական կենսաթոշակների մասին» ՍՍՌՄ Մինիստրների Սովետի նախագիծը։

Նախագծում պարզ և որոշակի նշված են թոշակավորման այն նոր արտոնությունների մասին, որոնցից օգտվելու են մեր երկրի աշխատավորները։ Օրենքի համաձայն պետական կենսաթոշակներ ստանալու իրավունք ունեն բոլոր այն բանվոր-ծառայողները, որոնք հասել են սահմանված տարիքին և ունեն համապատասխան աշխատանքային ստաժ՝ այն է տղամարդկանց համար՝ որոնք 60 տարեկան են և ունեն 25 տարվա աշխատանքի ստաժ, կանանց համար՝ որոնք 55 տարեկան են և ունեն 20 տարվա աշխատանքի ստաժ։ Ծերության կենսաթոշակների մինիմումը սահմանված է 300 ռուբլի, առավելագույնը՝ 1200 ռուբլի։



Կենսաթոշակի իրավունք ունեն զինծառայողներն ու նրանց ընտանիքի անդամները, այն ընտանիքները, որոնք զրկվել են իրենց կերակրողներից, ինչպես նաև ուսանողները և այլն։

Կենսաթոշակների մասին օրենքը խոշոր արտոնություն է տալիս հաշմանդամներին։ Նրանց համար ստեղծված է նյութական հնարավորություն բավարար սնունդ ստանալու և բուժվելու համար։ Հաշմանդամները, նայած նրանց աշխատունակության կորստյան աստիճանին, բաժանվում են 3 խմբի։ Հաշմանդամության խմբերի որոշումը կատարում են բժշկա-աշխատանքային էքսպերտային հանձնաժողովները՝ օրենքով սահմանված կարգով։ Հաշմանդամության կենսաթոշակ է նշանակվում երբ աշխատողը աշխատանքի մեջ խեղման է ենթարկվում կամ հիվանդանում է։ Աշխատանքային խեղման կամ պրոֆեսիոնալ հիվանդության պատճառով կենսաթոշակներ տրվում են անկախ նրանց աշխատանքի ստաժից։ Առաջին խմբի հաշմանդամները ստանում են իրենց վաստակի 100 տոկոսի չափով, երկրորդ խմբի հաշմանդամները՝ 90 տոկոսի չափով, իսկ երրորդ խմբինը՝ 65 տոկոսի չափով։

Բանվորների և ծառայողների ընտանիք-



ներին, որոնք կորցրել են իրենց կերակրողին, կենսաթոշակներ տրվում են այն անաշխատունակ անդամներին, որոնք գտնվում են նրա խնամքի տակ։

Պետական կենսաթոշակների Օրենքի նախագծում ասված է, որ սովետական քաղաքացիների ծերության, աշխատունակությունը կորցնելու և հիվանդության դեպքում նյութական ապահովության իրավունքը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի նվաճումներից մեկն է, որը վավերացված է ՍՍՌՄ Կոնստիտուցիայով։ Աշխատավորներին կենսաթոշակով ապահովելը ՍՍՌՄ-ում ստեղծված սոցիալիստական կարգի, Սովետական Միության Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ սովետական ժողովրդի ձեռք բերած տնտեսական հսկայական հաջողությունների և երկրի ամրապնդման արդյունքն է։

Սովետական ժողովրդի նյութական դրության բարելավման խնդիրը միշտ էլ եղել է մեր պարտիայի ուշադրության կենտրոնում։ Իր ամենօրյա պրակտիկ գործունեության ընթացքում պարտիան մեծագույն հոգատարություն է ցուցաբերել այդ հարցի նկատմամբ։

Երկրի տնտեսական հզորության անընդ-

հատ բարձրացումը պարտիային հնարավորություն ընձեռեցին մի շարք կարևոր որոշումներ ընդունելու ժողովրդի բարեկեցության հետագա բարելավման ուղղությամբ։ Արդեն կյանքի են վերածվել XX համագումարի մի շարք կարևորագույն որոշումները՝ օրինակ, շաբաթ և տոն օրերի նախօրյակին աշխատանքային օրը 2 ժամով կրճատելու մասին, կենսագործվում է մայրության և մանկության պաշտպանության վերաբերյալ որոշումը՝ հղի կանանց ծննդաբերությունից առաջ և ետծննդյան ժամանակաշրջանում տրվող օրերի ավելացման մասին, պետական կենսաթոշակների մասին Օրենքը։ Սա դեռ բոլորը չէ։ Շուտով կենսագործման մեջ կդրվեն նաև համագումարի մի շարք այլ կարևոր որոշումներ, ինչպիսիք են բանվոր-ծառայողների գոյություն ունեցող աշխատավարձի կարգավորման մասին, հիմնարկ-ձեռնարկություններում 8-ժամյա աշխատանքի փոխարեն 7 ժամյա աշխատանքային օր սահմանելու մասին և այլն։

Պարտիայի և կառավարության այս որոշումները է՛լ ավելի են բարձրացնում սովետական ժողովրդի օրինական հպարտությունը, նրանց նվիրվածությունն ու անսահման սերը պարտիայի և կառավարության հան-



դեպ, մեր մեծ Հայրենիքի հանդեպ։ Սովետական ժողովուրդը աշխատանքային նոր վերելքով, արտադրական նոր խանդավառությամբ է դիմավորում պարտիայի ու կառավարության բոլոր ձեռնարկումներին, ձեռնարկումներ, որոնք ուղղված են սոցիալիստական Հայրենիքի և ժողովրդի բարօրության բարձրացման գործին։

Առանձնապես մեծ խանդավառություն է առաջ բերել աշխատավորության մեջ կառավարության պետական կենսաթոշակների մասին Օրենքի նախագիծը։ Բոլոր հիմնարկ-ձեռնարկություններում, գործարաններում, հանքահորերում ու կոլտնտեսություններում ագիտատորները այս օրերին կարդում, պարզաբանում են աշխատավորներին պետական կենսաթոշակների մասին օրենքի նախագիծը։ Ամենուրեք աշխատավորները մեծ գոհունակությամբ ընդունեցին այն և պարտավորվեցին պարտիայի ու կառավարության հոգատարությանը պատասխանել արտադրական նոր վերելքով։

Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանի բանվոր-ծառայողների մեջ երբ մասսայականացվում էր այս կարևոր քաղաքական փաստաթուղթը, գեներատորների ցեխի պետ ընկ. Կարախանյանը հայտարա-

րեց, որ կառավարության և պարտիայի այս նոր հոգատարությունը ցույց է տալիս, որ մեր երկիրը տնտեսապես է՛լ ավելի հզոր ու ամուր է դարձել։ Պետական կենսաթոշակի նոր կարգը արմատական բարելավում կբերի սովետական մարդկանց կյանքի ու կենցաղի մեջ։ Խոսք եմ տալիս ցեխի բանվորների հետ միասին շարունակ կատարել ու գերակատարել մեր պլանները, բարելավել արտադրանքի որակը։ Արթիկտուֆի լավագույն քարհատ բանվոր ընկ. Ն. Հովակիմյանը ծանոթանալով նախագծին, ասաց, որ շնորհիվ պարտիայի ամենօրյա հոգատարության, մշտապես ապահովված է սովետական աշխատավոր մարդու վաղվա օրը։ Դա պարտավորեցնում է մեզ ավելի բարձր արտադրողականությամբ աշխատել, նյութական շատ բարիքներ տալ Հայրենիքին։ Շնորհակալություն մեր մեծ պարտիային ջերմ հոգատարության համար։

Ի պատասխան պարտիայի և կառավարության ջերմ հոգատարության, սովետական ժողովուրդը համակված է մեկ ցանկությամբ՝ անշեղորեն կենսագործել XX համագումարի պատմական որոշումները, ժամկետից շուտ կատարել և գերակատարել վեցերորդ հնգամյա պլանի առաջադրանքները։

---

# ԲԱՑԻ ԺՈՂՈՎՐԴԻ ՇԱՀԵՐԻՑ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՆ ՈՒՐԻՇ ՇԱՀԵՐ ՉՈՒՆԻ

ՀՈՎ. ՎԱՐԴԱՆՅԱՆ
Պատմական գիտությունների թեկնածու

Սովետական Միության Կոմունիստական պարտիան ուժեղ և անպարտելի է ժողովրդի հետ ունեցած իր կապերի շնորհիվ։ Ռևոլյուցիայի համար Լենինի ստեղծած և կոփած Կոմունիստական պարտիան սկսած իր ռևոլյուցիոն գործունեության առաջին իսկ քայլերից հանդես է եկել որպես աշխատավորության կենսական շահերի միակ և հավատարիմ պաշտպանը։

Պարտիան հօգուտ ժողովրդի շահերի կազմակերպեց բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության մարտական դաշինքը և մեր երկրի աշխատավորությանը ազատագրեց կալվածատերերի ու կապիտալիստների ճնշումից, նրանց տվեց ազատություն, ստեղծեց Սովետական իշխանություն։

Հանուն ժողովրդի շահերի պարտիան կենսագործեց երկրի սոցիալիստական ինդուս-

տրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման քաղաքականություն, կազմակերպեց սոցիալիզմի հաղթանակը մեր երկրում, որի շնորհիվ ընդմիշտ լիկվիդացվեցին շահագործող դասակարգերը և մարդու կողմից մարդու շահագործումը։ Մեր Հայրենիքը պատմական չտեսնված կարճ ժամանակամիջոցում վերացրեց իր տնտեսական և կուլտուրական հետամնացությունը, դարձավ առաջավոր, հզոր սոցիալիստական տերություն։

Սովետական հասարակարգի հաղթանակի համար մղվող պայքարում, Կոմունիստական պարտիան հասավ մասսաների քաղաքական բարձր ակտիվության, ծավալեց ժողովրդի անսպառ ստեղծարար ուժերն ու նախաձեռնությունը։ Կոմունիստական պարտիայի և նրա Կենտրոնական Կոմիտեի ամբողջ գործունեությունը միշտ տոգորված է խորին հավատով դեպի ժողովրդի ռևոլյուցիոն եռանդը, որը պատմության կերտողն է, հասարակության նյութական և հոգևոր բոլոր բարիքների ստեղծողը։ Լենինը հպարտությամբ էր խոսում բոլշևիկյան պարտիայի, որպես ժողովրդի առաջնորդի և ուսուցչի մասին։ Նա կոչ էր անում բոլոր կարևորագույն հարցերը քննարկման դնել գիտակից բանվորների առջև, պարտիայի առջև։ Լենինը մեր պարտիա-



յի մեջ տեսնում էր մեր դարաշրջանի միտքը, պատիվն ու խիղճը։ Կոմունիստական պարտիան իսկական ժողովրդական պարտիա է։ Նա ծնունդ է առել ժողովրդի ընդերքից, արտահայտում է նրա շահերը, հետևողականորեն պայքարում է այդ շահերի իրականացման համար։

Մեր պարտիան շարունակ ընդլայնում և ամրապնդում է իր կապերը մասսաների հետ։ Հենց ժողովրդի հետ այդ անխախտ կապի մեջ է Կոմունիստական պարտիայի ուժը և անպարտելիությունը։ Պարտիան մշտապես իր առաջնահերթ խնդիրն է համարում ապահովել աշխատավորների կենսամակարդակի անշեղ բարձրացումը։

Սովետական ժողովրդի բոլոր հերոսական գործերի մեջ մարմնավորված է մեր պարտիայի իմաստուն քաղաքականությունը։ Սովետական մարդիկ լավ գիտեն, որ իրենց բոլոր հաղթանակների համար պարտական են Կոմունիստական պարտիային։ Մեր Հայրենիքի աշխատավորները Կոմունիստական պարտիայի մեջ տեսնում են իրենց շահերի և ձգտումների միակ արտահայտիչը։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի վայելած անսահման վստահության ցայտուն արտահայտությունն է այն,

որ շարունակ նրա շարքերն են ընդունվում մեր երկրի լավագույն մարդիկ։ Եթե Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի նախապատրաստման և անցկացման ժամանակաշրջանում բոլշևիկների պարտիան իր շարքերում ուներ 240 հազար անդամ, իսկ Հայրենական Մեծ պատերազմի նախօրյակին՝ երեք միլիոն 400 հազար անդամ, ապա պատերազմի վերջում՝ 1945 թվականի կեսերին, պարտիայի շարքերում կային 5 միլիոն 800 հազար մարդ։ Այժմ Սովետական Միության Կոմունիստական պարտիան իր շարքերում միավորում է ավելի քան 7 միլիոն մարդ՝ մեր ժողովրդի լավագույն զավակներին։

Մեր երկրի բանվորները, գյուղացիները, ինտելիգենցիան տասնամյակների փորձով համոզվել են պարտիայի քաղաքականության ճշտության մեջ և իրենց բախտը ընդմիշտ կապել են նրա հետ, սիրով նրան են վստահել իրենց ներկան ու ապագան։ Սովետական մարդիկ իրենց հայացքներն ու խոհերը ուղղում են հարազատ բոլշևիկների պարտիային, արտահայտում իրենց երախտագիտության ու ջերմ սիրո զգացմունքները։ Մեր երկրի ժողովուրդները հպարտանում են նրանով, որ ղեկավարվելով Կոմունիստա-



կան պարտիայի կողմից, մարդկության համար ճանապարհ են հարթում դեպի կոմունիզմ։ Նրանք լավ գիտեն, որ իրենց բոլոր հաղթանակների համար պարտական են Լենինի ստեղծած Կոմունիստական պարտիային։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարի պատմական որոշումները միահամուռ հավանության արժանացան սովետական ժողովրդի կողմից։ Մեր երկրի աշխատավորները խորը գիտակցում են, որ պարտիայի XX համագումարի որոշումների կատարումը կարևոր քայլ է հանդիսանալու ՍՍՌՄ-ի հիմնական տնտեսական խնդրի լուծման՝ բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ առավել զարգացած կապիտալիստական երկրներին հասնելու և անցնելու խնդրի լուծման ճանապարհին։ Պարտիայի համագումարի կողմից երկրի առաջ դրած խնդիրները հաջողությամբ կլուծվեն, որովհետև սովետական ամբողջ ժողովուրդը պարտիայի քաղաքականությունը, նրա նախատեսած պլանները համարում է իր կենսական գործը և հերոսաբար պայքարում է դրանց կենսագործման համար։

ՍՄԿՊ XX համագումարի որոշումները, ո-

րոնք ոգորված են մարքսիզմ-լենինիզմի կենսահաստատ գաղափարներով, պարտիային է՛լ ավելի հարազատ դարձրին, է՛լ ավելի ամրապնդեցին նրա կապերը ժողովրդի հետ։

Արտահայտելով բոլոր աշխատավորների մտքերն ու զգացմունքները, Լենինգրադի «Էլեկտրոսիլա» գործարանի բանվորական ժողովներից մեկում հավաքող փականագործ Վ. Գորոխովը հուզված ասաց.— Պարտիայի XX համագումարում ընդունված որոշումների յուրաքանչյուր բառը, յուրաքանչյուր տողը շնչում են վստահությամբ և ուժով, լի են հոգատարությամբ մեր Հայրենիքի և սովետական ժողովրդի հետագա բարգավաճման նկատմամբ։ Ես ցանկանում եմ ի սրտե ասել. լսի՛ր, հարազատ պարտիա, դու մեր հպարտությունն ես, մեր փառքը, մեր հույսը։ Քո փորձված ղեկավարությամբ մենք կընթանանք առաջ, դեպի կոմունիստական պայծառ ապագան։

Երևանի Պահեստամասերի գործարանի կոլեկտիվի միտինգում, որը նվիրված էր ՍՄԿԿ XX համագումարի աշխատանքների ավարտմանը, արտահայտելով բոլոր բանվորների, ծառայողների և ինժեներա-տեխնիկական աշխատողների միահամուռ ցանկությունը, գործարանի ավագագույն բանվոր Սարգիս



Սահակյանը իր ճառում ասաց. «Ստեղծարար աշխատանքների այն մեծ ծրագիրը, որ նշել է պարտիայի համագումարը, ջերմ արձագանք է գտնում մեր սրտերում, որովհետև այդ ծրագիրը ոգորված է ժողովրդի ուժի նկատմամբ հավատով, ոգորված է ժողովրդի բարօրության նկատմամբ հոգատարությամբ։ Պարտիայի հոգատարությանը մենք կպատասխանենք անձնվեր աշխատանքով։ Շնորհակալություն, հարազատ պարտիա։ Մենք բոլորս քեզ հետ ենք»։

Այս օրերին առանձին ջերմությամբ են հնչում՝ մեր պարտիան, մեր հարազատ պարտիան բառերը։ Այդ ոգեշունչ բառերը կարելի է լսել մեր Հայրենիքի բոլոր անկյուններում, որտեղ ապրում և ստեղծագործում է սովետական մարդը։

Մեր երկրի ժողովուրդները ջերմորեն սիրում են իրենց հարազատ Կոմունիստական պարտիան, վստահում են նրան, քանի որ տասնյակ տարիների փորձով համոզվել են, որ պարտիան ժողովրդի շահերից բացի ուրիշ շահեր չունի։

---

# ՁՐՈՒՅՑ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

## Ս. ՄԻՋԻՖԵՐՋՅԱՆ

*Գյուղատնտեսական արտելի օրինակելի Կանոնադրության ընդունման ժամանակից անցել է ավելի քան 20 տարի։ Այդ ժամանակամիջոցում խոշոր փոփոխություններ են տեղի ունեցել կոլտնտեսային գյուղի կյանքում։ Հանրային բազմաճյուղ տնտեսության կառավարման գործում կուտակվել է նոր և հարուստ փորձ։*

*Գյուղատնտեսական արտելի հին Կանոնադրությունը չէր ընդգրկում կոլտնտեսությունների բազմազան կյանքի ու գործունեության բոլոր կողմերը և մի շարք դեպքերում սահմանափակում էր նրանց նախաձեռնությունը հանրային տնտեսությունը վարելու այնպես, ինչպես պահանջում են կոլտնտեսային աշխատանքի կոնկրետ պայմանները։ Օրինակ, խիստ անհրաժեշտ է, որ կոլտնտեսականներին տնամերձ հողամասեր հատկացնելու, անձնական օգտագործման տակ եղած անասունների չափը ո-*



*րոշելու, աշխօրերի մինիմումը սահմանելու, կոլտնտեսականներին կոլտնտեսությունից հեռացնելու, եկամուտները բաշխելու և կոլտնտեսային կյանքին վերաբերող բազմաթիվ այլ հարցեր լուծեն հենց իրենք՝ կոլտնտեսությունները։ Այդ կապակցությամբ գյուղատնտեսական արտելի Կանոնադրության և կոլտնտեսային արտադրության կազմակերպման ու արտելի գործերի կառավարման ասպարեզում կոլտնտեսականների նախաձեռնության հետագա զարգացման մասին ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշման մեջ ասված է «.. .ելնելով հողագործության և անասնաբուծության շեշտակի վերելքն ապահովելու գլխավոր խնդրից, հանձնարարել, խորհուրդ տալ, որ կոլտնտեսություններն իրենք լրացնեն ու փոխեն գյուղատնտեսական արտելի ընդունած Կանոնադրության առանձին դրույթները, հաշվի առնելով կոլտնտեսության տեղական, կոնկրետ պայմանները»։*

*Ինչպես հայտնի է, մինչև այժմ տնամերձ հողամասեր հատկացնելու գործում կոլտնտեսականների հանրային աշխատանքներում մասնակցելու չափը նկատի չէր առնըվում։ Հաճախ վատ աշխատող կոլտնտե-*

սականները, իսկ երբեմն նաև կոլտնտեսության հետ աշխատանքային կապ չունեցող մարդիկ լրիվ չափով օգտագործում էին իրենց տնամերձ հողամասերը ու օգտվում կոլտնտեսականի բոլոր արտոնություններից։ Օրինակ, անցյալ տարի ռեսպուբլիկայի աշխատունակ կոլտնտեսականների որոշ մասը ոչ մի մասնակցություն չունեցավ կոլտնտեսային հանրային աշխատանքներին, սակայն նրանք լրիվ չափով պահպանեցին իրենց տնամերձ հողամասերը։ Ապարանի շրջանի կոլտնտեսություններում անցյալ տարի 577 հոգի, Ազիզբեկովի շրջանում՝ 582 հոգի և Թալինի շրջանում՝ 708 հոգի կոլտնտեսությունների աշխատանքներին բոլորովին չմասնակցեցին։ Սակայն կոլտնտեսային աշխատանքից խուսափող այդ բոլոր անձինք լրիվ չափով օգտվեցին իրենց ունեցած տնամերձ հողամասերից։ Նման շատ օրինակներ կարելի է բերել ռեսպուբլիկայի համարյա բոլոր շրջաններից։

Տնամերձ հողամասեր հատկացնելու վերաբերյալ գյուղատնտեսական արտելի Կանոնադրության նոր դրույթը խոշոր չափով կնպաստի աշխատանքի կարգապահության ամրապնդմանը կոլտնտեսություններում։

Այժմ կոլտնտեսականների ընդհանուր ժողովի որոշմամբ տնամերձ հողամասի չա-





փը սահմանվելու է հաշվի առնելով կոլտնտեսականի ընտանիքի աշխատունակ անդամների աշխատանքային մասնակցությունը։ Այն ընտանիքները, որոնք բարեխղճորեն չեն մասնակցելու հանրային աշխատանքներին, ավելի պակաս չափով տնամերձ հող կունենան, քան կոլտնտեսություններում բարեխղճորեն աշխատող ընտանիքները։ Իբրև կանոն ազնիվ և բարեխղճորեն աշխատող կոլտնտեսականների ընտանիքների բոլոր չափահաս և աշխատունակ անդամներն ակտիվորեն աշխատում են կոլտնտեսություններում։ Ինչ խոսք, որ հենց նրանք էլ պետք է ավելի շատ տնամերձ ստանան և լիովին օգտվեն կոլտնտեսականի արտոնություններից։

Կոլտնտեսային արտադրության համար չափազանց կարևոր նշանակություն ունի աշխատունակ կոլտնտեսականների աշխօրերի պարտադիր մինիմումի չափի ճիշտ սահմանումը։

Կոլտնտեսականի աշխօրերի մինիմումի չափը կոլտնտեսությունները սահմանելու են ելնելով հանրային տնտեսության մեջ աշխօրերի ծախսումների պահանջներից, այն հաշվով, որ լավագույն ձևով կատարվի ցանքերի մշակությունը, անասուններին խնամքը և կատարվեն բերք[illegible]

թերատվության պետական առաջադրանքները։ Այսպիսով, աշխօրերի մինիմումի չափը շրջանի բոլոր կոլտնտեսությունների համար միևնույնը չի կարող լինել, քանի որ տարբեր կոլտնտեսություններ ունեն տարբեր արտադրական պայմաններ։

Տղամարդկանց և կանանց համար նույն կոլտնտեսությունում կարելի է տարբեր չափի աշխօրերի պարտադիր մինիմում սահմանել։ Այդպիսի մոտեցումը հնարավորություն կտա ավելի ռացիոնալ օգտագործել բանվորական ուժը և ապահովել կոլտնտեսության աշխատանքների ժամանակին կատարումը։

Կոլտնտեսության արտադրական նորմաները և աշխատանքի աշխօրային գնահատումները մշակում են կոլտնտեսությունները, ընդ որում աշխատանքի վարձատրությունը աշխօրերով պետք է կատարել այնպես, որ կարևորագույն գործ կատարող կոլտնտեսականները ավելի բարձր վարձատրություն ստանան, քան թեթև ու երկրորդական աշխատանք կատարողները։

Գյուղատնտեսական արտելի Կանոնադրության մեջ ուղղումներ, փոփոխություններ և լրացումներ մտցնելիս կոլտնտեսությունները պետք է նկատի ունենան 100 հեկտար հողից առավելագույն չափով գյուղատնտե-



սական արտադրանք ստանալու խնդիրը։ Գործը կազմակերպեն այնպես, որ յուրաքանչյուր կոլտնտեսություն աշխատանքային և դրամական քիչ միջոցների ծախսումով ապահովի արտադրական միջոցների և աշխատուժի լրիվ օգտագործումը, որ կոլտնտեսությունում չլինեն անարտադրողական ծախսեր։

Մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները ամեն տարի 17—18 միլիոն ռուբլի գումար են ծախսում անասնակերի և 9—10 միլիոն ռուբլի զանազան կուլտուրաների սերմեր ձեռք բերելու համար։ Այնինչ, տնտեսությունը ճիշտ վարելու դեպքում նրանք կարող են իրենց անասուններին ապահովել սեփական կերով և սերմացուներով։ Այդ դեպքում զգալիորեն կպակասի գյուղատնտեսական արտադրանքի ինքնարժեքը և յուրաքանչյուր տարի կավելանա աշխօրերին բաշխվող դրամական եկամուտը 27—28 միլիոն ռուբլով։ Կոլտնտեսությունները հնարավորություն ունեն նաև զգալի խնայողություններ կատարել այլ արտադրական ծախսերի հաշվին։ Օրինակ, վառելանյութը խնայողաբար օգտագործելու, մանր ինվենտարի գնման, ինչպես նաև վարչատնտեսական ծախսերի կրճատման հաշվին։

Վերջին ժամանակներս, երբ Ստեփանավանի շրջանի կոլտնտեսությունները զբաղվեցին այդ հարցով, ապա նրանք գտան, որ իրենց կոլտնտեսություններում կան հաշվային աշխատողների, պահեստապետների, պահակների, ֆուրաժիրների, բրիգադիրների, ֆերմաների վարիչների ավելորդ հաստիքներ՝ շուրջ 267 մարդ, որոնց պահպանման համար տարեկան ծախսվում էր ավելի քան 88 հազար աշխօր։ Նրանք կրճատեցին այդ ավելորդ հաստիքները և այժմ շարունակում են պարզեցնել կոլտնտեսությունների վարչական ու սպասարկող ապարատը։

Կոլտնտեսություններում աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևոր խթան է հանդիսանում կոլտնտեսականների ամենամսյա ավանսավորումը։ ՍՄԿՊ Կենտկոմը և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը իրենց որոշումով խորհուրդ տվին կոլտնտեսություններին ընդհանուր ժողովների որոշմամբ կոլտնտեսականներին ամեն ամիս ավանս տալ, դրամական եկամուտների առնվազն 25 տոկոսի չափով։

Բացի դրանից, ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշմամբ կոլտնտեսությունների երկարատև վարկերի գծով ունեցած պարտքերը այժմ մարվելու են



դրամական անբաժանելի ֆոնդի հաշվին։ Անբաժանելի ֆոնդի հաշվին է կատարվելու նաև անասնապահական և այլ արտադրական շենքերի ու կառուցվածքների շինարարության, ինչպես նաև այգիների տնկման և աճեցման վրա ծախսված աշխօրերի դրամական վարձատրությունը։

Կոլտնտեսությունների վարչությունները օգտագործելով այս նոր հնարավորությունները պետք է ճշտորեն կատարեն կոլտնտեսականների ամենամսյա ավանսավորումները։ Ընթացիկ տարվա եկամուտները բաշխելու ժամանակ պետք է կոլտնտեսություններն ստեղծեն դրամական և բնամթերային փոխանցիկ ֆոնդեր, որպեսզի կարողանան հետագայում ավանսավորել կոլտնտեսականներին։ Այժմ կոլտնտեսություններն իրենք են որոշելու բնամթերային ու դրամական լրացուցիչ վարձատրության կարգն ու չափը։

Պարտիայի և կառավարության այս նոր որոշումը աշխատանքային բուռն վերելք է առաջ բերել մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսային աշխատավորության մեջ։ Նրանք կաշխատեն կրկնապատկված եռանդով, որպեսզի պատվով կատարեն ՍՄԿՊ XX համագումարի որոշումները։

---

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԶՐՈՒՅՑԸ ԱՌԱՋԱՎՈՐ ՓՈՐՁԻ ՄԱՍԻՆ

*ՔՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ*

*Ագիտացիոն աշխատանքի հարուստ փորձ ունի Բասարգեչարի շրջանի Նորակերտ գյուղի ագիտատոր ընկ. Արամայիս Հովսեփյանը։ Նա սիստեմատիկ պրոպագանդում և մասսայականացնում է գյուղատնտեսության առաջավորների փորձը։ Օրերս նա իր զրույցի թեման դարձրեց իրենց կոլտնտեսության № 2 բրիգադայի փորձը՝ հացահատիկի բարձր բերք աճեցնելու մասին։ Սկսելով իր զրույցը, նա ունկնդիրներին մանրամասնորեն պարզաբանեց այն խնդիրները, որ պարտիայի XX համագումարը դրել է գյուղատնտեսության աշխատողների առջև։*

*— ՍՄԿՊ XX համագումարը,— ասաց ագիտատորը,— խնդիր է դրել՝ 1960 թվականին երկրում հացահատիկի արտադրությունը հասցնել 11 միլիարդ փթի։ Այս գործում մեծ անելիքներ ունենք նաև մենք՝ Նորակերտի կոլտնտեսականներս։ Մեր կոլտնտեսությունն ունի լավ հողեր, ժրաջան աշխա-*



*տողներ, մեզ սպասարկում է ՄՏ կայանը, որը հարուստ է գյուղատնտեսական մեքենաներով և այլն։ Այս ամենը, ասում է ագիտատորը, հարկավոր է միայն ռացիոնալ օգտագործել, անընդհատ բարձրացնելով հացահատիկի բերքատվությունը, իջեցնելով հացահատիկի ինքնարժեքը։ Ագիտատորը հանգամանորեն կանգ է առնում կոլտնտեսության № 2 բրիգադայի փորձի վրա։*

*— Մեր կոլտնտեսության հողերը բոլորն էլ բերրի են,— ասում է նա,— սակայն № 1 բրիգադան համեմատաբար հացահատիկի ցածր բերք ստացավ, քան № 2 բրիգադան։ Երկու բրիգադաներն էլ ունեն հավասար չափով հողային տարածություն։ Սակայն արդյունքը ստացվում է տարբեր։ № 1 բրիգադան 275 հեկտար տարածությունից պատրաստ է հանձնել 2.800 ցենտներ հացահատիկ, իսկ № 2 բրիգադան նույնչափ տարածությունից՝ 5.800 ցենտներ, ամեն մի հեկտարից հավաքելով 21,5 ցենտներ բերք։*

*Բարձր բերք ստանալու «գաղտնիքը»,— ասում է ագիտատորը,— լավ և անձնուրաց աշխատանքի մեջ է։ № 2 բրիգադայում աշխատանքի կազմակերպումը կատարված է այնպես, որ աշխատունակ բոլոր կոլտնտեսականները կատարում ու գերակատա-*

րում են օրվա առաջադրանքները։ Հնգօրյակներով բրիգադիր ընկ. Հ. Մկրտչյանը գրանցում է կոլտնտեսականների աշխօրերը իրենց գրքույկներում։ Յուրաքանչյուր կոլտնտեսական լավ գիտի, թե երբ, ինչ աշխատանք է կատարելու ինքը։ Այդ բրիգադայում,— շարունակում է ագրոնոմը,— բարձր հիմքերի վրա է դրված ցանքերի մշակությունը։ Օրինակ, բերքահավաքի հետ միասին, օգոստոսի կեսերին նրանք կատարում են խոզանի երեսվար՝ 5—6 սմ. խորությամբ, իսկ դրանից մոտ 20—25 օր հետո՝ հիմնական խոր վար՝ 25—30 սմ. խորությամբ՝ նախախոփիկ ունեցող գութանով։ Ստացվում է հավասար, առանց կոշտերի, բարձրորակ վար, պահպանվում է հողում եղած խոնավությունը։ Բրիգադիր ընկ. Հովհաննես Մկրտչյանը հատուկ ուշադրություն է դարձնում գարնան նախացանքային աշխատանքների ժամանակին և բարձրորակ կատարման վրա, որն անհրաժեշտ է հողում կուտակված խոնավությունը ավելորդ գոլորշիացումից պաշտպանելու և մշակվող բույսերի պահանջը ջրի նկատմամբ բավարարելու համար։ Վաղ գարնանը, քեշի ժամանակ, հողի երեսի շերտը անմիջապես զիգզագվում է, որը արգելում է խոնավության



գոլորշիացմանը, հարթեցնում է դաշտը, բույսերի ծիլերի համար ստեղծում է հողի փուխր շերտ, ուժեղացնում է օդափոխանակությունը, հեշտացնում բույսերի արմատային և վերերկրյա սննդառության պրոցեսները։

Ընկ. Հ. Մկրտչյանի բրիգադան սև ցելի առաջին փոցխումը կատարում է վաղ գարնանը։ Հետագայում սև և վաղ ցելերի մշակությունը կատարվում է միատեսակ։

Ագրոնոմը մանրամասնորեն պատմում է նաև դաշտերը տեղական և հանքային պարարտանյութերով սիստեմատիկ կերպով պարարտացնելու մասին։

— Խոզանատեղերը վարելուց առաջ,— ասում է ագրոնոմը,— № 2 բրիգադան պարարտացնում է հողերը, տալով հեկտարին 50 կգ. ազոտ, 70 կգ. ֆոսֆոր և 30 կգ. կալիում, իսկ վաղ գարնանը՝ աշնանացանը սնուցում է, տալով 30 կգ. ազոտ և 25 կգ. ֆոսֆոր ու անմիջապես փոցխում։ Բացի այդ, ցանքի յուրաքանչյուր հեկտարը պարարտացվում է 25—30 տոննա գոմաղբով։

Կոլտնտեսականները լավ ծանոթ լինելով հողի առանձնահատկությանը՝ տարբեր հողակտորներ տարբեր ձևերով են պարարտացնում։

— Բավական չէ հողը լավ մշակել և ցանքի համար այն լավ նախապատրաստել, անհրաժեշտ է նաև ցանքը կատարել ճիշտ ժամանակին, լավորակ սերմացուով և հետագայում էլ ցանքերը լավ խնամել,— ասում է ագիտատորը։ Այնուհետև ագիտատորը մանրակրկիտ կերպով պատմում է հացահատիկի ցանքը կատարելու վերաբերյալ № 2 բրիգադայի աշխատանքի փորձի մասին։ Այդ բրիգադան,— ասում է ագիտատորը,—աշնանացանը կատարում է լավագույն ժամկետում՝ օգոստոսի 20-ից մինչև սեպտեմբերի 1-ը, ցանում է ախտահանված և ընտրված սերմացու։ Բրիգադան ցանքը կատարում է դիֆերենցված ձևով։ Օրինակ, վաղ ցելում ցանում է 160 կգ. ցորեն, խավանատեղերում՝ 180 կգ., իսկ տորֆաճահճային հողերում՝ 150—160 կիլոգրամ։ Իբրև կանոն, բրիգադայի կոլտնտեսականները աշխատանքները սկսում են այն հողակտորներից, որտեղ հողը շուտ է չորանում և քեշի շուտ է գալիս։ Նրանք հացահատիկային կուլտուրաների ցանքը ամբողջովին կատարում են շարքացաններով՝ խաչաձև և նեղաշար ձևով։ Գարնանը աղքատ հողերում ցանված հացահատիկային կուլտուրաներին տալիս են երկու սնուցում հանքային պա-



րարտանյութով (30 կգ. ազոտ և 25 կգ. ֆոսֆոր)։ Այն հողակտորներում, ուր երևում են մոլախոտերը, բրիգադան կատարում է 1—2 քաղհան, նախքան բույսերի խողովակ տալը։

Այնուհետև ագիտատորը պատմում է, որ ընկ. Հ. Մկրտչյանի դաշտավարական № 2 բրիգադան օրինակելի է կազմակերպում նաև հացահատիկի բերքահավաքը։ Նախքան բերքահավաքը, բրիգադան բոլոր հողամասերում նորոգում է ճանապարհները, հարթեցնում է փոս տեղերը և բացում կոմբայնի ընթացքի ուղին։ Բերքահավաքը հիմնականում կատարում են Նորակերտի ՄՏ կայանի մեխանիզատորները, բայց ակտիվորեն մասնակցում են նաև կոլտնտեսականները։ Կոլտնտեսականների երեխաների միջոցով կազմակերպվում է հասկահավաք։ Բրիգադայում այնպես է կազմակերպված աշխատանքը, որ ամբողջ բերքահավաքի ընթացքում պայքար է տարվում յուրաքանչյուր կիլոգրամ հացահատիկի համար։ Աճեցրած ամբողջ բերքը մտնում է պահեստ։ Զրույցի վերջում ունկնդիրները խոստացան հետևել առաջավորների օրինակին, աշխատել նրանց պես և նվաճել բարձր բերք։

---

# ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԵՎ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ՄԻՍԻԱ

## Լ. ԿՐԱԵՎ

Վերջին ժամանակվա միջազգային կարևորագույն իրադարձությունը, որն իր վրա բևեռեց աշխարհի բոլոր երկրների հասարակայնության ամենալայն շրջանների ուշադրությունը, ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ Ն. Ա. Բուլգանինի և ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության անդամ Ն. Ս. Խրուշչևի ուղևորությունն էր Անգլիա։

Անգլիա մեկնելուց ոչ շատ առաջ պատասխանելով անգլիական «Թայմս» թերթի հարցերին, ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ Ն. Ա. Բուլգանինը ընդգծեց, որ տարբեր երկրների ղեկավար պետական գործիչների անձնական կոնտակտները մի արդյունավետ միջոց են դժվար ու վիճելի հարցերում փոխըմբռնման հասնելու համար։ Նա հիշեցրեց, որ հենց անձնական կոնտակտներն էին, որ բարերար դեր խաղացին



ավստրիական հարցի լուծման ժամանակ, ՍՍՌՄ-ի և Հարավսլավիայի միջև բարեկամական կապերի վերականգնման, Ասիայի մի շարք երկրների հետ ՍՍՌՄ-ի բարեկամական հարաբերությունների զարգացման գործում և մի շարք այլ դեպքերում։

Հայտնի է, որ վերջին տարիներս Սովետական Միությունը քիչ ջանքեր չի թափել՝ միջազգային լարվածությունը թուլացնելու, ժողովուրդների միջև բարեկամական կապերն ամրապնդելու, նոր պատերազմների և զինված կոնֆլիկտների առաջացման վտանգը կանխելու համար։ Զգալի չափով այդ ջանքերի շնորհիվ էր, որ անցյալ տարվա ամռանը, Ժնևում, կայացավ չորս տերությունների՝ ՍՍՌՄ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի և ԱՄՆ-ի կառավարությունների ղեկավարների հանդիպումը։ Նրանց անձնական կոնտակները և կարևորագույն վիճելի հարցերի շուրջը կատարած մտքերի փոխանակությունը հանգեցրին միջազգային լարվածության որոշ թուլացման։ «Ժնևի ոգին» արժանացավ բոլոր խաղաղասեր ժողովուրդների ջերմ հավանությանը, կաշկանդեց «սառը պատերազմի» ջատագովների գործողությունները։ Հենց այնտեղ էլ, Ժնևում, Անգլիայի պրեմյեր-մինիստր Անտոնի Իդենը ընկերներ

Բուլգանինին և Խրուշչևին հրավիրեց այցելելու Բրիտանական կղզիները։ Սովետական ղեկավարները ընդունեցին այդ հրավերը։

Ապրիլի 18-ին, բարի կամքի միսիայով, ընկերներ Բուլգանինը և Խրուշչևը «Օրջոնիկիձե» հածանավով ժամանեցին անգլիական Պորտսմուտ նավահանգիստը։ Ոտք դնելով անգլիական հողը, սովետական ղեկավարները իրենց առաջին իսկ ելույթներում ընդգծեցին, որ պետական կառուցվածքի տարբերությունը չպետք է խանգարի, որ ՍՍՌՄ-ը և Անգլիան ապրեն որպես բարի հարևաններ, որ նրանք ակտիվ կերպով համագործակցեն և բարելավեն իրենց փոխհարաբերությունները։ Ելնելով երկու երկրների շահերից էլ, անհրաժեշտ է Անգլիայի և ՍՍՌՄ-ի միջև վերականգնել տնտեսական փոխադարձ լայն կապերը, ընդլայնել առևտրական հարաբերությունները, կազմակերպել փորձի և տեխնիկայի, գիտության ու կուլտուրայի տարբեր բնագավառների նվաճումների վերաբերյալ ինֆորմացիայի փոխադարձ փոխանակություն։

Լոնդոնի և Անգլիայի մյուս քաղաքների բնակիչները ջերմորեն ու բարեկամաբար ողջունեցին ընկերներ Բուլգանինին և Խրուշչևին, հաջողություն ցանկանալով այն բա-



նակցություններին, որ վարում էին Սովետական Միության և Մեծ Բրիտանիայի ղեկավար գործիչները։

Իսկ ի՞նչ արդյունքներ ունեցան այդ բանակցությունները։

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ Ն. Ա. Բուլգանինի և Միացյալ Թագավորության պրեմյեր-մինիստր Անտոնի Իդենի կողմից ստորագրված հայտարարության մեջ ասված է, որ բանակցությունները երկու կողմից էլ վարվում էին անկեղծության ու ռեալիզմի ոգով և վերաբերում էին ինչպես սովետա-անգլիական հարաբերությունների հարցին, այնպես էլ միջազգային իրադրության հարցերին՝ ամբողջությամբ վերցրած։

Բանակցությունների կարևոր արդյունք է հանդիսանում այն համատեղ հայտարարությունը, որ քաղաքական ասպարեզում, առևտրի, գիտության, կուլտուրայի ասպարեզում և մյուս ասպարեզներում սովետա-անգլիական հարաբերությունների ամրապնդումը համապատասխանում է երկու երկրների ժողովուրդների շահերին և կնպաստի ընդհանուր խաղաղության ու անվտանգության ամրապնդմանը։

Համատեղ հայտարարության մեջ արտահայտված է երկու կառավարությունների

վճռականությունը՝ նպաստել միջազգային լարվածության թուլացմանը, փոխադարձ վստահության ամրապնդմանը և հարաբերությունների բարելավմանը պետությունների միջև։

Ընդգծելով, որ միմյանց միջև, ինչպես նաև մյուս պետությունների հետ ունեցած հարաբերություններում երկու երկրներն էլ ղեկավարվելու են Միավորված Ազգերի Կազմակերպության սկզբունքներով, բանակցությունների մասնակիցները համոզմունք հայտնեցին, որ բոլոր պետությունների, անկախ նրանց հասարակական սիստեմներից, բարեկամական համագործակցության և գոյակցության համար հիմք են հանդիսանում ազգային անկախության և սուվերենության հարգումը, տերիտորիալ ամբողջությունը և միմյանց ներքին գործերին չմիջամտելը։

Կողմերը հայտարարեցին, որ կանեն իրենցից կախված ամեն ինչ, որպեսզի աշխարհի բոլոր մասերում վերջ դրվի սպառազինությունների մրցավազքին և դրանով իսկ ժողովուրդներին փրկեն նոր պատերազմի սպառնալիքից։

Սովետական ղեկավարների և անգլիական կառավարության ղեկավարների բանակցությունների ժամանակ երկու կողմերն էլ հայ-



տարարեցին, որ նրանք պատրաստ են շարունակելու իրենց ջանքերը՝ զինաթափման և միջուկային զենքի արգելման պրոբլեմի շուրջը համաձայնության հասնելու համար։ Միջազգային հասարակայնությունը դրական գնահատական տվեց այդ փաստին։ Ինչ վերաբերում է Սովետական Միությանը, ապա նա այսուհետև ևս կանի հնարավոր ամեն բան՝ այդ խնդրի լուծմանը նպաստելու համար։

Կարևոր նշանակություն ունի մտքերի այն փոխանակությունը, որ կատարվեց Մերձավոր և Միջին Արևելքում տիրող դրության հարցի շուրջը։ Ինչպես հայտնի է, երկրագնդի այդ շրջանում արևմտյան որոշ տերությունների գործողությունների հետևանքով իրադրությունը սրվել է և սպառնալիք ստեղծվել խաղաղության ու ժողովուրդների անվտանգության գործի համար։ Դրա գլխավոր պատճառը ռազմական խմբավորումների ստեղծումն է, այնպիսի խմբավորումների, ինչպիսին է, օրինակ, բաղդադյան պակտը։

Թեև այդ շրջանում տեղի ունեցող միջազգային կոնֆլիկտների և բախումների պատճառների վերաբերյալ սովետական և անգլիական տեսակետները հակադիր են,

ՍՍՌՄ-ը և Մեծ Բրիտանիան արտահայտեցին իրենց հաստատ մտադրությունը՝ անել հնարավոր ամեն ինչ Մերձավոր և Միջին Արևելքում խաղաղության ու անվտանգության պահպանմանը նպաստելու համար, անհրաժեշտ օգնություն ցույց տալով Միավորված Ազգերի Կազմակերպությանը։ Այդ նպատակով մոտիկ ապագայում պետք է ձեռնարկվեն էֆեկտիվ միջոցառումներ՝ շահագրգռված ժողովուրդների ազգային իղձերին համապատասխան, նրանց անկախությունն ապահովելու անհրաժեշտությունից ելնելով և ՄԱԿ-ի Կանոնադրության սկզբունքներին լիովին համապատասխան։

Բոլոր խաղաղասեր ժողովուրդները, և առաջին հերթին Մերձավոր ու Միջին Արևելքի երկրների ժողովուրդները, գոհունակությամբ ընդունեցին այդ հարցի առթիվ սովետական և անգլիական կառավարությունների միջև ձեռք բերված պայմանավորվածությունը։

Բանակցությունների մեջ կարևոր տեղ էր բռնում սովետա-անգլիական առևտրի զարգացման հարցը։ Սովետական Միության և սոցիալիստական լագերի մյուս երկրների դեմ վարելով «սառը պատերազմի» քաղաքականություն, արևմտյան տերությունները մի շարք խտրական սահմանափակումներ էին



մտցրել այդ երկրների հետ կատարվող առևտրի գծով։ Նրանք հույս ունեին այդ սահմանափակումների միջոցով խանգարել ՍՍՌՄ-ի և ժողովրդական դեմոկրատիայի երկրների տնտեսական զարգացմանը։ Սակայն կյանքը ցույց տվեց, որ այդ հույսերը ավազի վրա էին կառուցված։

Անգլիայի ղեկավարների հետ վարած բանակցությունների ընթացքում սովետական ղեկավարները հայտարարեցին, որ իրենք պատրաստ են զգալիորեն ընդարձակելու առևտուրը Անգլիայի հետ։ ՍՍՌՄ-ը, ընդգծեցին սովետական ղեկավարները, այդ առաջարկում է ոչ թե այն պատճառով, որ նա չի կարող ապրել առանց անգլիական ապրանքների, այլ այն պատճառով, որ նրա համար ավելի շահավետ է որոշ ապրանքներ գնել Անգլիայից, քան դրանք արտադրել իր մոտ։ Իսկ Անգլիայի համար, իր հերթին, ավելի շահավետ է մի շարք ապրանքներ գնել Սովետական Միությունից։

Բանակցությունների արդյունքների վերաբերյալ հայտարարության մեջ նշված է, որ Սովետական Միությունը, առևտրի ասպարեզում սահմանափակումների և խտրականության բացակայության դեպքում, կկարողանար մոտակա հինգ տարում—1956-ից

մինչև 1960 թվականը—ավելացնել անգլիական ապրանքների գնումը, հասցնելով այն 9—11 միլիարդ ռուբլի գումարի։

Կողմերը համաձայնվեցին այն բանում, որ առևտրի զարգացումը ՍՍՌՄ-ի և Անգլիայի միջև՝ կարող էր մեծ ավանդ մտցնել երկու երկրների միջև ավելի սերտ հարաբերություններ ստեղծելու գործում։ Առևտրական կապերի ընդարձակման փոխադարձ պատրաստակամությունը՝ սովետա-անգլիական բանակցությունների կարևոր դրական արդյունքն է։

Հարկավոր է նշել, որ առևտրի ընդլայնումը ունի ոչ միայն տնտեսական նշանակություն։ Առևտուրը պետությունների մերձեցման, նրանց միջև փոխադարձ վստահության ստեղծման և, հետևապես, քաղաքական պրոբլեմների լուծման հուսալի ուղին է։

Բանակցությունների ժամանակ համատեղ հայտարարություն ընդունվեց ՍՍՌՄ-ի և Անգլիայի միջև նաև կուլտուրական և այլ կապերի հետագա զարգացման մասին։ Վերջին ժամանակներս երկու երկրների միջև տեղի ունեցավ պառլամենտական, գիտական և կուլտուրական դելեգացիաների, թատրոնի և երաժշտության ներկայացուցիչ-



ների, ինչպես նաև սպորտային դելեգացիաների փոխադարձ այցելություն։

Անգլիայի ղեկավար պետական գործիչների հետ ընկերներ Ն. Ա. Բուլգանինի և Ն. Ս. Խրուշչևի վարած բանակցությունների արդյունքները վկայում են, որ բարի կամքի առկայության դեպքում և հաշվի առնելով կողմերի փոխադարձ շահերը՝ կարելի է հասնել տեսակետների մերձեցման և դրական արդյունքներ ձեռք բերել միջազգային վիճելի պրոբլեմների լուծման գործում։ Անգլիական հասարակայնությունը, ինչպես նաև մյուս երկրների հասարակական լայն շրջանները հենց այդպես էլ գնահատեցին բանակցությունների արդյունքները։

Սովետական մարդիկ ջերմորեն ողջունում են ընկերներ Բուլգանինի և Խրուշչևի՝ Անգլիա կատարած ուղևորությունը, որպես անգլո-սովետական հարաբերությունների մեջ կատարված մի կարևոր իրադարձություն, որը լայն հեռանկարներ է բացում անգլո-սովետական հարաբերությունների բարելավման համար, ամբողջ աշխարհում խաղաղության ամրապնդման համար։

---

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՀՈՒՆԻՍ ԱՄՍՎԱ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. ԳԵՐԱԶԱՆՑ ՑՈՒՑԱՆԻՇՆԵՐՈՎ ԿԱՏԱՐԵՆՔ ՍՏԱՆՁՆԱԾ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարի բանաձևը ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցման վերաբերյալ, Հայպետհրատ, 1956:

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը պարտիայի XX համագումարին. *Հայպետհրատ, 1956։*

ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թվականների հինգերորդ հնգամյա պլանի կատարման արդյունքների մասին, *ՍՍՌՄ Մինիստրների Սովետի ժողովրդական տնտեսության հեռանկարային պլանավորման Հանձնաժողովի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից Կենտրոնական վիճակագրական վարչության հաղորդագրությունը, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի ապրիլի 25-ի համարում։*



## 2. ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ ԱՐՄԱՏԱՎՈՐԵՆՔ ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԸ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Աշխատանքի արտադրողականության բարձրացումը, *Երկեր, հատոր 27, էջ 306—310, Հայպետհրատ, 1951։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարի բանաձևը ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցման վերաբերյալ, *Հայպետհրատ, 1956։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը պարտիայի XX համագումարին, *Հայպետհրատ, 1956, էջ 65—69, 76—78։*

## 3. ԼՐԻՎ ԵՎ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ՕԳՏԱԳՈՐԾԵՆՔ ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ԿԱՐՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ, ԲԱՐԵԼԱՎԵՆՔ ՆՐԱՆՑ ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԽՆԱՄՔԸ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվները ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ, *Հայպետհրատ, 1956, 3-րդ մաս։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի

XX համագումարի բանաձևը ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցման վերաբերյալ, *Հայպետհրատ, 1956։*

## 4. ԵՐԿՐԻՆ ՏԱՆՔ ԱՎԵԼԻ ՇԱՏ ԵՎ ԱՎԵԼԻ ԷԺԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԹԵՐՔՆԵՐ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ.— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը պարտիայի XX համագումարին, *Հայպետհրատ, 1956, էջ 81—100։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի և Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Մինիստրների Սովետի ԴԻՄՈՒՄԸ գյուղատնտեսության բոլոր աշխատողներին ու մասնագետներին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի ապրիլի 8-ի համարում։*

Ավելի շատ գյուղատնտեսական արտադրանք՝ աշխատանքի և միջոցների նվազագույն ծախսումով, *«Ս. Հ.»-ի 1956 թվականի ապրիլի 27-ի առաջնորդողը։*

Շեշտակիորեն ավելացնենք գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, իջեցնենք ինքնարժեքը, *հոդված՝ տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի ապրիլի 27-ի համարում։*



## 5. 1956 ԹՎԱԿԱՆԸ ԴԱՐՁՆԵՆՔ ԲԱՐՁՐ ԲԵՐՔԻ ՏԱՐԻ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի և Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Մինիստրների Սովետի ԴԻՄՈՒՄԸ գյուղատնտեսության բոլոր աշխատողներին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի ապրիլի 8-ի համարում։*

Վճռական թափ հաղորդել գարնանացանին, *«Ս. Հ.»-ի 1956 թվականի մայիսի 9-ի առաջնորդողը։*

Գյուղատնտեսության աշխատողների պատվավոր պարտքը, *«Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 1956 թվականի 4-րդ համարի առաջնորդողը։*

## 6. ԼՐԻՎ ԿԱՐՈՂՈՒԹՅԱՄԲ ՕԳՏԱԳՈՐԾԵՆՔ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԵՔԵՆԱՆԵՐՆ ՈՒ ԳՈՐԾԻՔՆԵՐԸ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ.— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը պարտիայի XX համագումարին, *Հայպետհրատ, 1956, էջ 94—97։*

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ.— Զեկուցում ՍՄԿԿ XX համագումարի Դիրեկտիվների մասին ՍՍՌՄ ժողովրդական

տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ, *Հայպետհրատ, 1956, 2-րդ մաս։*

Ծ. ԱՌՈՒՇԱՆՅԱՆ—Լայնորեն ուսումնասիրել և արմատավորել գյուղատնտեսության առաջավորների փորձը, *տպագրված «Պարտիական կյանք» ամսագրի 1956 թվականի 4-րդ համարում։*

## 7. ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԵՎ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅԱՆ ՀՈԳԱՏԱՐՈՒԹՅՈՒՆԸ ԺՈՂՈՎՐԴԻ ՆԿԱՏՄԱՄԲ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՕՐԵՆՔ՝ Պետական կենսաթոշակների մասին *(ՍՍՌՄ Մինիստրների Սովետի նախագիծը), տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի մայիսի 9-ի համարում։*

Մեծ կարևորություն ունեցող փաստաթուղթ, *«Ս. Հ.»-ի 1956 թվականի մայիսի 10-ի առաջնորդողը։*

## 8. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ՀԵՏԵՎՈՂԱԿԱՆՈՐԵՆ ԿԻՐԱՌՈՒՄ Է ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԱՆՎՏԱՆԳՈՒԹՅՈՒՆՆ ԱՊԱՀՈՎԵԼՈՒ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշ-



վետու զեկուցումը պարտիայի XX համագումարին, *առաջին մաս, Հայպետհրատ, 1956։*

Հայտարարություն ՍՍՌՄ Մինիստրների Սովետի նախագահ Ն. Ա. Բուլգանինի ու ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության անդամ Ն. Ս. Խրուշչևի և Միացյալ թագավորության պրեմյեր-մինիստր սըր Անտոնի Իդենի բանակցությունների մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի ապրիլի 28-ի համարում։*

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆԻ ԵՎ Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎԻ պրես-կոնֆերանսը Լոնդոնում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի ապրիլի 29-ի համարում։*

ՍՍՌՄ կառավարության հայտարարությունը զինաթափման հարցի մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի մայիսի 16-ի համարում։*

*ՄԱԿ-ի Զինաթափման հանձնաժողովի ենթակոմիտեում սովետական դելեգացիայի ղեկավար Ա. Ա. Գրոմիկոյի* հայտարարությունը ՏԱՍՍ-ի Լոնդոնի թղթակցին՝ *ենթակոմիտեի սեսիայի աշխատանքի արդյունքների մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի մայիսի 8-ի համարում։*

# ՈՎՔԵ՞Ր ԵՆ ՊՈՒԺԱԴԻՍՏՆԵՐԸ

**Մի խումբ ընթերցողներ դիմել են խմբագրությանը, խնդրելով պատասխանել հետևյալ հարցին «Ովքե՞ր են պուժադիստները»: Տպագրում ենք պատասխան այդ հարցին:**

*1953 թվականի կեսերին Ֆրանսիայում կազմակերպվեց այսպես կոչված «Առևտրականների և արհեստավորների պաշտպանության միություն»: Այդ միության կողմնակիցների ժգգոհության պատճառը աճող հարկային բեռն էր, որի ծանրությունը ավելի ու ավելի էր զգում մանր առևտրական բուրժուազիան: Դժգոհ առևտրականների և արհեստավորների շարժման գլուխ կանգնեց մանր առևտրական Պյեր Պուժադը՝ Սեն-Սերե քաղաքից:*

*Իր գոյության սկզբնական շրջանում այդ կազմակերպությունը պաշտպանում էր միայն մանր բուրժուազիայի պրոֆեսիոնալ շահերը, մի բան, որը նպաստում էր միջին խավերին բանվոր դասակարգի դաշնակիցը դարձնելուն՝ կառավարության քաղաքականության փոփոխման համար մղվող պայքարում, որովհետև մանր բուրժուազիայի պրո-*



*ֆեսիոնալ շահերը շատ բաներում միահյուսվում են աշխատավորների հիմնական մասսաների պահանջների հետ:*

*Այդ հանգամանքը լուրջ անհանգստություն պատճառեց խոշոր բուրժուազիային: Բանվոր դասակարգի հետ միջին խավերի մերձեցման հնարավորությունը կանխելու և նրանց շարժումը իր նեղ դասակարգային շահերի համար օգտագործելու նպատակով՝ ռեակցիան հույսը դրեց Պուժադի վրա: Պյեր Պուժադը մի ճարպիկ ու խորամանկ ավանտյուրիստ է: Նա ընտրությունների ընթացքում օգտագործելով կառավարության քաղաքականությունից դժգոհ առևտրականներին ու արհեստավորներին, ազգային ժողովում ստացավ հիսուն դեպուտատական տեղ իր «միության» ներկայացուցիչների համար:*

*Մանր-բուրժուական մասսաներին իր կողմը նվաճելու համար նա սկսեց դեմագոգիկ պրոպագանդա մղել կառավարության հակաժողովրդական քաղաքականության դեմ: Նա հանդես եկավ, մասնավորապես, մանր առևտրականների վրա դրվող անարդարացի հարկերը վերացնելու, սոցիալական ապահովության օրենքները առևտրականների և արհեստավորների վրա տարածելու, հարկային ներում շնորհելու օգտին: Նա սկսեց սուր կերպով քննադատել բուրժուական սիստեմի*

մի քանի արատները։ Այդ ամենը նպաստեց Պուժադի ժողովրդականության աճմանը։ Այդ դեմագոգիայի հետևանքով կառավարության հակաժողովրդական քաղաքականությունից դժգոհ միջին խավերի մի զգալի մասը, առանց ըմբռնելու ֆաշիստացող կարյերիստի բուն նպատակները, նրա մեջ տեսավ իր «փրկարարին», «առաջնորդին» և գնաց նրա հետևից։

Սակայն Պուժադը շուտով ցույց տվեց իր իսկական դեմքը։ 1955 թվականին նա փաստորեն դեն է շպրտում «դեմոկրատի» դիմակը և սկսում է միությունը վերածել նոր ֆաշիստական քաղաքական պարտիայի։ Նրան հաջողվում է միության համագումարին պարտադրել մի շարք «ծրագրային» դրույթներ, որոնք փոխ են առնված Հիտլերից, Մուսոլինից, Ֆրանկոյից և Պետենից։

Այսօր արդեն Պուժադը գրեթե դադարել է ուշադրություն դարձնել արհեստավորների և առևտրականների արմատական շահերի վրա, որոնց օգնությամբ նա վերջերս պառլամենտում տեղ ձեռք բերեց իր համար։

Ներկայումս պուժադիստները ուժգին թափով գրոհային ջոկատների կադրեր են պատրաստում՝ իշխանությունը բռնությամբ զավթելու համար։ Այդ նպատակով նրանք



ստեղծում են հատուկ դպրոցներ, որտեղ ունկնդիրներին սովորեցնում են մասսայական միտինգներ և ցույցեր տապալելու «լավագույն» եղանակները։ Ընդօրինակելով հիտլերականներին, պուժադիստները անկարգություններ են ստեղծում Ազգային ժողովում, հարձակումներ են գործում հրապարակային ժողովների մասնակիցների վրա, դեմոկրատական կազմակերպությունների շենքերի վրա և այլն։

Վերջերս լույս ընծայած իր «Ես ընտրեցի պայքարը» գրքում (որը նույնիսկ իր վերնագրով հիշեցնում է Հիտլերի «Իմ պայքարը» գիրքը) Պուժադը պարծենկոտությամբ գրում է. «Մենք կարող ենք, իհարկե, գրոհով վերցնել բուրբոնյան պալատը, սակայն մենք դեռևս բավականաչափ ուժեղ չենք։ ...Մենք երրորդ անգամ կգանք Փարիզ... Բայց ես հավատացնում եմ ձեզ, որ դա կլինի վերջին անգամ։ Կառավարությունը իշխանություն ունի, իսկ ես՝ ուժ»։

Պուժադիստները առայժմ թաքցնում են մի բան՝ իրենց կապը խոշոր մոնոպոլիաների հետ։ Սակայն թերթերի էջերում արդեն տեղեկություններ են թափանցում այն ամուր բարեկամական կապերի մասին, որ ունեն նրանք մի քանի կապիտալիստական տրեստների հետ։




Ահա թե ովքեր են պուժադիստները։ Վերջին ամիսների նրանց բոլոր գործողությունների էությունը և ինքնառեկլամը բացեցին ֆրանսիացիներից շատերի աչքերը՝ տեսնելու «պուժադիզմի» հարաճուն վտանգը։ Եվ այժմ ֆրանսիացիները գնալով ավելի ու ավելի լավ են հասկանում, որ պուժադիստների գործունեությունը սպառնում է ֆրանսիական ժողովրդի դեմոկրատական իրավունքներին և երկրի ռեսպուբլիկական կարգին։

«Պուժադիզմի» դեմ պայքարելու համար ստեղծված է Ռեսպուբլիկայի պաշտպանության կոմիտե, որի մեջ մտնում են Ֆրանսիայի հասարակական և քաղաքական շատ գործիչներ։ Այդ նույն նպատակով ամենուրեք Ֆրանսիայում կազմակերպվում են զգոնության հակաֆաշիստական կոմիտեներ, որոնք հաջողությամբ մերկացնում են պուժադիստների ոտնձգությունները։ Նշանակալի է, որ այդ կոմիտեների մեջ են մտնում տարբեր հայացքների տեր մարդիկ՝ կոմունիստներ, սոցիալիստներ, ռադիկալներ, զանազան պրոֆմիությունների գործիչներ։

Վերջերս Ֆրանսիայում տեղի ունեցած իրադարձությունները վկայում են, որ ժողովրդական մասսաները, որոնք այժմ պայքարում են «ֆաշիզմը չի անցնի» նշանաբանով, կփակեն պուժադիստների ճանապարհը։

Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

## СОДЕРЖАНИЕ



Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Վ. Գ. Բելինսկի— *«Փիլիսոփայական ընտիր երկեր»: Երկու հատորով, հատոր II: Գինը 10 ռ. 25 կ., 616 էջ, տիրաժ 5000:*

Դ. Ա. Զումիչև— *«Տաջիկական ՍՍՌ»: Գինը 2 ռ. 20 կ., 158 էջ, տիրաժ 3000:*

Վ. Պարտիզունի— *«Մուրացան»: Կյանքն ու ստեղծագործությունը: Գինը 12 ռ. 35 կ., 560 էջ, տիրաժ 5000:*

---

**Отдел пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 10 1956 г.**

*ՎՖ 03130 Պատվեր 442 Տիրաժ 8950*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8:*

*Գինը 50 կոպ.:*